Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1950

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



—O—

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 30-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## (Նյութեր զեկուցումների և զրույցների համար)

«Միայն Սովետական իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն»:

Ի. ՍՏԱԼԻՆ

*Սովետական Միության ժողովուրդների եղբայրական մեծ ընտանիքում, հայ ժողովուրդը Հայաստանում սովետական կարգերի հաստատման պանծալի 30-րդ տարեդարձը դիմավորում է քաղաքական, տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած մեծ հաջողություններով:*

*Պայքարի ու հաղթանակի անցած 30 տարիներին ձեռք բերած նվաճումները արդյունք են կոմունիստական պարտիայի, Սովետական կառավարության և ժողովուրդների հանճարեղ առաջնորդ, հայ ժողովրդի*

մեծ ազատարար ընկեր Ստալինի ջերմ հոգատարության։

Սովետական Հայաստանի աշխատավորությունը իր երախտագիտության առաջին խոսքերն ուղղում է բոլշևիկների պարտիային, Սովետական կառավարությանը և մեծ առաջնորդ ընկեր Ստալինին այն բանի համար, որ հայ ժողովուրդն, ազատագրվելով դարավոր ճնշումից ու շահագործումից, ՍՍՌՄ ժողովուրդների միասնական ընտանիքում կառուցել է սոցիալիստական հասարակակարգ և վստահորեն առաջ է գնում դեպի կոմունիզմի հաղթանակը, դեպի երջանիկ կյանքի նոր, փայլուն ապագան։

Միայն բոլշևիկյան պարտիան էր, և նրա ստեղծողներ ու առաջնորդներ Լենինը և Ստալինն էին, միայն ռուս ժողովուրդն էր, որ Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին հայ ժողովրդին տվեցին պետականություն, ազգային վերածննդի հնարավորություն։

***

Դարեր շարունակ հայ ժողովուրդն անձնուրաց պայքար է մղել իր ազատության և անկախության համար։ Բազմադարյան այդ պատմության ընթացքում հայ ժողովուրդն ստեղծել է պետականություն, կուլտուրա,



կառուցել է գյուղեր ու քաղաքներ, իր պատմական կյանքի օջախները, սակայն օտար նվաճողները՝ պարսիկները, թյուրքերը և մյուս զավթիչները նվաճել են հայոց երկիրը, կործանել ժողովրդի ստեղծած կյանքը։ Բայց նրանց չի հաջողվել լռեցնել հայ ժողովրդին, ընկճել նրա ոգին, նրա ձգտումը դեպի ազատություն, դեպի անկախություն։ Հայ ժողովրդի մղած ազատագրական պայքարի պատմության մեջ արմատական բեկում առաջացավ այն ժամանակ, երբ նա իր բախտն ու պատմությունը կապեց ռուս ականավոր ժողովրդի պատմության հետ։

Հայ և ռուս ժողովուրդների բարեկամության տարեգրության մեջ փառապանծ, անմոռանալի էջ բացվեց 19-րդ դարի վերջին և 20-րդ դարի սկզբին, երբ հայ աշխատավորության բախտը կապվեց Ռուսաստանի պրոլետարիատի և բոլշևիկյան պարտիայի բախտի հետ, հանճարեղ առաջնորդներ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի անվան հետ։

Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի անմիջական ղեկավարությամբ կազմակերպվեց Հայաստանի բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության պայքարը ցարական ինքնակալության և հայ ժողովրդի ամենաոխերիմ թշնամիների՝ դաշնակցության և այլ

բուրժուա-նացիոնալիստական կոնտրռևոլյու-
ցիոն տարրերի դեմ։

Ընկեր Ստալինի գլխավորությամբ, նրա
մարտական զինակիցներ՝ Ստ. Շահումյա-
նը, Ս. Սպանդարյանը, Ա. Միկոյանը ռևո-
լյուցիոն մեծ աշխատանք էին կատարում,
պայքարի էին հանում հայ բանվորներին ու
գյուղացիներին ինքնակալության և դաշնակ-
ցական բանդաների դեմ։ Դաշնակցության
տիրապետության օրերին հայ ժողովուրդը
կանգնեց ֆիզիկական ոչնչացման եզրին։
«Հայաստանը դաշնակների օրով,— ասում
է ընկ. Միկոյանը,— որբերի երկիր էր, ար-
ցունքի երկիր, աղքատության և վայրենի
կամայականության երկիր»։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևո-
լյուցիան մարդկային հասարակության պատ-
մության մեջ բացեց նոր դարագլուխ՝ պրոլե-
տարական ռևոլյուցիաների դարագլուխ։ Հոկ-
տեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյու-
ցիայի նշանակությունը կայանում է ոչ
միայն նրանում, որ նա Ռուսաստանում
տապալեց շահագործողների տիրապետու-
թյունը և ստեղծեց սոցիալիստական պե-
տություն, վերացրեց մարդու շահագործումը
մարդու կողմից, այլև փշրեց ազգա-
յին ճնշման շղթաները, իմպերիալիստա-



կան գաղութային շղթաները և Ռուսաստանի
ժողովուրդների համար ապահովեց զարգաց-
ման հնարավորությունը։

Հայաստանի աշխատավորությունն ամուր
կանգնեց Հոկտեմբերյան Սոցիալիստական
Մեծ ռևոլյուցիայի դրոշի տակ և Լենինի-
Ստալինի պարտիայի գլխավորությամբ
պայքարի դուրս եկավ Հայաստանում Սովե-
տական իշխանության հաստատման համար։
Ոգեշնչված ռուս պրոլետարիատի և ռևոլյու-
ցիոն գյուղացիության օրինակով, Հայաս-
տանի բանվորներն ու գյուղացիները զին-
ված մարտեր էին մղում դաշնակների հակա-
ժողովրդական կառավարության և նրան հո-
վանավորող ու օգնող ամերիկա-անգլիական
ու թյուրքական իմպերիալիստ գաղութարար-
ների դեմ։

1920 թվի նոյեմբերի 28-ի լույս 29-ի գի-
շերը Լենինի-Ստալինի պարտիայի գլխավո-
րությամբ Հայաստանի հյուսիսային շրջա-
նում ծավալվեց ռևոլյուցիոն ջոկատների զին-
ված ապստամբությունը, որը մեծ արագու-
թյամբ տարածվեց Ղազախի, Դիլիջանի,
Շամշադինի, Իջևանի շրջաններում։ Ռևոլյու-
ցիոն դրոշը պարզած հայ աշխատավորու-
թյանը, Լենինի և Ստալինի ցուցումով, օգնու-
թյան եկավ փառապանծ 11-րդ Կարմիր Բա-

նակը։ Հայաստանի աշխատավորությունը, ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, բոլշևիկների պարտիայի և նրա հանճարեղ առաջնորդներ Լենինի և Ստալինի ղեկավարությամբ, 1920 թվականի նոյեմբերի 29-ին տապալեց դաշնակների անարգ տիրապետությունը և Հայաստանում հռչակեց Սովետական իշխանություն։ Այսպիսով նոր դարագլուխ բացվեց հայ ժողովրդի պատմության մեջ՝ ազգային վերածննդի և ազատ, սովետական կյանքի, սոցիալիզմի դարագլուխը։

Սովետական Հայաստանը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդն է։

1920 թ. դեկտեմբերի 4-ին «Կեցցե՛ Սովետական Հայաստանը» խորագրով հոդվածում ընկեր Ստալինը գրել է.

«Տանջված ու բազմաչարչար, Անտանտայի և դաշնակների ողորմածությամբ սովի, քայքայման ու գաղթի մատնված Հայաստանը, — բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստանը այժմ իր փրկությունը գտավ այն բանի մեջ, որ իրեն հայտարարեց սովետական երկիր։

Ո՛չ Անգլիայի, հայկական շահերի «դարավոր պաշտպանի» կեղծ հավաստիացումները,



ո՛չ Վիլսոնի տխրահռչակ տասնչորս կետերը, ո՛չ Ազգերի լիգայի մեծազգորդ խոստումները՝ Հայաստանի կառավարման իր «մանդատով»— չկարողացան (և չէի՛ն կարող) փրկել Հայաստանը կոտորածից ու ֆիզիկական բնաջնջումից։ Միայն Սովետական իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն։

...Թող իմանան բոլորը, ում հարկ է գիտենալ, որ այսպես կոչված Հայկական «պրոբլեմը», որի վրա ապարդյուն գլուխ էին ջարդում իմպերիալիստական դիվանագիտության հին գայլերը, կարողացավ լուծել միայն Սովետական իշխանությունը»։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումը արմատական բեկում էր հայ ժողովրդի պատմության մեջ դեպի նոր կյանք, դեպի նոր ու փառավոր ուղի։ Հայկական ՍՍՌ Պետական Հիմնում ասված է.

«Լենինն անմահ մեզ հույս անշեջ
պարգևեց,
Մեր դեմ շողաց երջանկաբեր այգաբաց.
Ստալինը մեծ՝ կործանումից մեզ փրկեց
Եվ տվեց մեզ նոր ազատ կյանք
փառապսակ»։

***

Հայաստանի բանվորներն ու գյուղացիներն իշխանության գլուխ բարձրացան ժառանգություն ստանալով ագրարային հետամնաց մի երկիր, որտեղ ժողովրդական տնտեսությունը քայքայված էր, իշխում էր սովը, համաճարակը, խմբերով թափառում էին անտուն և անօթևան գաղթականները։ Անհրաժեշտ էր հիմք դնել նոր կյանքի կառուցմանը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում՝ արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի ասպարեզում։

Սովետական իշխանության հաղթանակի առաջին իսկ օրից Հայաստանի աշխատավորությունը, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, ռուս ականավոր ժողովրդի օգնությամբ, ձեռնամուխ եղավ ավերված ժողովրդական տնտեսության վերականգնման և հետագա զարգացման մեծ գործին։

Լենինի և Ստալինի նախաձեռնությամբ ստեղծված Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի ժողովուրդների Ֆեդերացիան (Անդրֆեդերացիան) և ՍՍՌՄ-ի կազմումը հնարավորություն տվեցին հայ ժողովրդին եղբայրական ժողովուրդների հետ միասին համագործակցելու և կառուցելու սոցիալիզմ։



Մեր լայնածավալ երկրի ժողովուրդների ստալինյան համագործակցության ու բարեկամության պայմաններում, սովետական ջերմ ու կենսատու հայրենասիրությամբ տոգորված հայ ժողովուրդը պատմական կարճ ժամանակամիջոցում, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում հասած գլուխ հաջողությունների՝ Սովետական Հայաստանը հետամնաց ագրարային երկրից վերածվեց ինդուստրիալ սոցիալիստական ռեսպուբլիկայի։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում առաջացել ու զարգացել են ժողովրդական տնտեսության բոլորովին նոր ճյուղեր,— էներգետիկ, քիմիական, մեքենաշինական, լեռնահանքային, սննդի, շինանյութերի, կոնսերվի, տեքստիլ և այլն։ Ստալինյան հնգամյակների տարիներին Սովետական Հայաստանում բարձրացել են արդյունաբերական մի շարք խոշոր կենտրոններ՝ Երևանը, Լենինականը, Կիրովականը, Ալավերդին, Ղափանը, Հոկտեմբերյանը, Սևանը և ուրիշներ։

Նախապատերազմյան ստալինյան հնգամյակների տարիներին Հայկական ՍՍՌ-ում կառուցվել և գործարկվել են հարյուրավոր գործարաններ ու ֆաբրիկաներ, դրանց հա-

ժամանակաշրջան՝ էլեկտրակայանների կարողությունն ավելացել է 22,6 անգամ, պղնձի ձուլումը՝ 2,2 անգամ, մետաղամշակման արդյունաբերության արտադրանքը՝ 4,3 անգամ, իսկ քիմիական արդյունաբերության արտադրանքը միմիայն 1932—1940 թվերին աճեց 35 անգամ։

Նախապատերազմյան հնգամյակների ընթացքում ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերության արտադրանքն աճել է 15 անգամ, իսկ 1913 թվականի համեմատությամբ՝ 21,5 անգամ։

Արդյունաբերության ընդլայնումը ու զարգացումը պայմանավորեց նրա տեսակարար կշռի աճը ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ։

Նախապատերազմյան ստալինյան հնգամյակների տարիներին արդյունաբերության մեջ կապիտալ ներդրումների գումարը կազմել է 900 միլիոն ռուբլի։

1941 թվականին Հայաստանի ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը հասավ 472 միլիոն ռուբլու, 1913 թ. 20 միլիոն ռուբլու և 1919 թվականի 1 միլիոն 710 հազար ռուբլու դիմաց։

Ինչպես մեր Միության բոլոր ժողովուրդների, այնպես էլ հայ ժողովրդի խաղաղ ու



ստեղծագործ աշխատանքն ընդհատվեց մեր հայրենիքի վրա 1941 թ. հունիսին գերմանա-ֆաշիստական զավթիչների կողմից կատարված ուխտադրուժ հարձակմամբ։

Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին հայ ժողովրդի զավակները արիաբար կռվեցին Հայրենական Մեծ պատերազմի ռազմաճակատներում և փառքով պսակեցին իրենց անունները։ Գերմանա-ֆաշիստական զավթիչների և ճապոնական իմպերիալիստների դեմ մղվող մարտերում ցուցաբերած արիության և հերոսության համար հայ ժողովրդի 106 զավակներ արժանացան Սովետական Միության Հերոսի բարձր կոչման, մոտ 60 հազար մարտիկներ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։ Հայրենական պատերազմում Սովետական Բանակի զորավարների շարքում գտնվում էին 56 հայ գեներալներ։

Թիկունքում կատարած անձնուրաց աշխատանքով հայ ժողովուրդն ամրապնդում էր Սովետական քաջարի Բանակի հաղթանակը ռազմաճակատում։

Համաշխարհային պատմական հաղթանակ տանելով գերմանա-ֆաշիստական զավթիչների և ճապոնական միլիտարիստների դեմ,

Սովետական Միությունն իր մեջ ուժ և կարողություն գտավ ոչ միայն արագորեն բուժելու պատերազմի հասցրած վերքերը, այլև կազմակերպելու մեր էկոնոմիկայի աննախընթաց վերելքը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական ժողովրդի տնտեսական ու կուլտուրական գործունեության հիմքը մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թվականների հնգամյա պլանն էր։ «Նոր հնգամյա պլանի հիմնական խնդիրներն են,— ասել է ընկեր Ստալինը,— վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև քիչ թե շատ զգալի չափով գերազանցել այդ մակարդակը։

...Ինչ վերաբերում է ավելի երկարատև ժամանակամիջոցի պլաններին, ապա պարտիան մտադիր է կազմակերպել ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք, որը մեզ հնարավորություն տար մեր արդյունաբերության մակարդակը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ բարձրացնելու, օրինակ, երեք անգամ»։

Հետպատերազմյան հնգամյա պլանը կա-



ռոր էտապ հանդիսացավ մեր երկրի զարգացման գործում, ստալինյան կանխագծումների իրականացման ճանապարհին։

Սովետական Հայաստանի աշխատավորությունը պանծալի 30-ամյակը դիմավորում է ստալինյան նոր հնգամյա պլանի կատարման ու գերակատարման համար մղվող պայքարում ձեռք բերած փայլուն նվաճումներով։

1949 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, արդյունաբերության համախառն արտադրանքը կազմեց 215 տոկոս. այդ նշանակում է, որ Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերությունը 1949 թվականին երկու անգամ ավելի շատ արտադրանք է տվել, քան 1940 թվականին։ Կապիտալ շինարարության ծավալը 1949 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ ավելացավ 43 տոկոսով։ 1950 թվականի երրորդ եռամսյակի պլանը կատարված է 103 տոկոսով, 1949 թվականի երրորդ եռամսյակի համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 12 տոկոսով։ Արտադրանքի ինքնարժեքն այս տարվա անցած ինն ամիսների ընթացքում նախատեսված 10,4 տոկոսի փոխարեն իջել է 13,5 տոկոսով։ 1949 թվականի համեմա-

*Սովետական Միությունն իր մեջ ուժ և կարողություն գտավ ոչ միայն արագորեն բուժելու պատերազմի հասցրած վերքերը, այլև կազմակերպելու մեր էկոնոմիկայի աննախընթաց վերելքը։*

*Հետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական ժողովրդի տնտեսական ու կուլտուրական գործունեության հիմքը մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թվականների հնգամյա պլանն էր։ «Նոր հնգամյա պլանի հիմնական խնդիրներն են,— ասել է ընկեր Ստալինը,— վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև քիչ թե շատ զգալի չափով գերազանցել այդ մակարդակը։*

*...Ինչ վերաբերում է ավելի երկարատև ժամանակամիջոցի պլաններին, ապա պարտիան մտադիր է կազմակերպել ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք, որը մեզ հնարավորություն տար մեր արդյունաբերության մակարդակը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ բարձրացնելու, օրինակ, երեք անգամ»։*

*Հետպատերազմյան հնգամյա պլանը կա-*



*րևոր էտապ հանդիսացավ մեր երկրի զարգացման գործում, ստալինյան կանխագծումների իրականացման ճանապարհին։*

*Սովետական Հայաստանի աշխատավորությունը պանծալի 30-ամյակը դիմավորում է ստալինյան նոր հնգամյա պլանի կատարման ու գերակատարման համար մղվող պայքարում ձեռք բերած փայլուն նվաճումներով։*

*1949 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, արդյունաբերության համախառն արտադրանքը կազմեց 215 տոկոս. այդ նշանակում է, որ Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերությունը 1949 թվականին երկու անգամ ավելի շատ արտադրանք է տվել, քան 1940 թվականին։ Կապիտալ շինարարության ծավալը 1949 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ ավելացավ 43 տոկոսով։ 1950 թվականի երրորդ եռամսյակի պլանը կատարված է 103 տոկոսով, 1949 թվականի երրորդ եռամսյակի համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 12 տոկոսով։ Արտադրանքի ինքնարժեքն այս տարվա անցած ինն ամիսների ընթացքում նախատեսված 10,4 տոկոսի փոխարեն իջել է 13,5 տոկոսով։ 1949 թվականի համեմա-*

տության մեջ զգալիորեն բարելավվել է արտադրանքի որակն ու տեսականին։

Ժամանակակից առաջավոր տեխնիկայի արմատավորումը, աշխատատար պրոցեսների մեքենայացումը, նորարարական շարժման ծավալումը, աշխատավորների նյութական դրության բարելավումը ապահովեցին աշխատանքի արտադրողականության բարձրացումը, որը, 1940 թվականի համեմատությամբ, այս տարի աճել է 59, 6 տոկոսով։

Օր օրի շարք են մտնում նոր ձեռնարկություններ։ Հետպատերազմյան հնգամյակի միայն առաջին չորս տարիների ընթացքում ռեսպուբլիկայում շահագործման է հանձնվել ավելի քան 50 արդյունաբերական ձեռնարկություն, ընդլայնվել և վերակառուցվել է ավելի քան 27 արդյունաբերական ձեռնարկություն։ Արտադրական պլանների կատարումով ու գերակատարումով են դիմավորում Սովետական Հայաստանի 30-րդ տարեդարձը ռեսպուբլիկայի արդյունաբերական և տրանսպորտի ձեռնարկությունները։

Աննախընթաց չափով զարգանում է էներգետիկ տնտեսությունը։ Էլեկտրաէներգիայի արտադրանքը դեռևս 1945 թվականին, 1913 թվականի համեմատությամբ աճեց ավելի քան 85 անգամ։ Անցյալ տարի շահագործ-



ման հանձնվեց Սևանի լճային խոշոր էլեկտրակայանը, որով Հայաստանի էլեկտրակայանների կարողությունն ավելացավ մոտ 20 տոկոսով։ Գործարկվեցին նաև մի շարք շրջանային էլեկտրակայաններ։ Այս և Հրազդան գետի վրա նոր կառուցվող մյուս հիդրոէլեկտրակայանները խոշոր մասշտաբներով կընդարձակեն Սովետական Հայաստանի էներգետիկ բազան և լայն հեռանկարներ կբացեն ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության նոր, բուռն վերելքի համար։

Ռեսպուբլիկայի հանքագործները, ժամկետից շուտ կատարելով իրենց ստանձնած պարտավորությունները, պլանից դուրս հարազատ պետությանն են հանձնել հազարավոր տոննա հանքաքար։ Հետպատերազմյան հնգամյակի տարիներին լայնորեն ծավալված հանքավայրերի հետախուզությունը և յուրացումը հսկայական նշանակություն է ստացել։ Նոր հնգամյակի տարիներին մեր ռեսպուբլիկայում զգալի աշխատանք է կատարվել հանքային աշխատանքների տեխնիկական վերազինման՝ մեխանիզացիայի ուղղությամբ։ Պղնձաքարի հանույթը Ղափանի և Շամլուղի հանքավայրերում անցած չորս տարիների ընթացքում ավելացել է մոտ 50 տոկոսով, պղնձի ձուլումն Ալավերդու գոր-

ծարանում նույն ժամանակամիջոցում ավելացել է 40 տոկոսով։

Արագ տեմպերով զարգանում է ռեսպուբլիկայի մեքենաշինությունը։ Խոշոր չափերով ծավալվում է շինանյութերի արտադրությունը։ Շինանյութերի արտադրության հարուստ բազա է հանդիսանում Արթիկի հրաշալի տուֆը, Դավալուի բարձրորակ կրաքարը, Անիի պեմզան, Թումանյանի հրակայուն կավը, Հայաստանի գեղեցիկ մարմարը։ Հետպատերազմյան հնգամյակի տարիներին կառուցվել են մի շարք խոշոր գործարաններ, որոնք ապահովում են ռեսպուբլիկայի կապիտալ շինարարության անընդհատ աճող պահանջները։

Նոր հնգամյակում զգալի հաջողությունների է հասել ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերությունը, որն ունի ավելի քան 31 ճյուղ և թողարկում է 400-ից ավելի զանազան արտադրանք։ Երևանի և Այրումի Կոնսերվի գործարանները, ժամկետից շուտ կատարելով հետպատերազմյան հնգամյա պլանը, երկրին պլանից դուրս տվել են մի քանի միլիոն պայմանական տուփ կոնսերվ։

Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության առաջավոր ճյուղերից է նաև տեքստիլ արդյունաբերությունը, որի շատ



ձեռնարկություններ ժամկետից շուտ կատարել են հնգամյակի առաջադրանքները։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում աճել են արտադրության բազմաթիվ նորարարներ, ստախանովականներ, որոնք իրենց առաջադրանքները կատարել ու կատարում են կրկնակի և եռակի անգամ։ Այսպես օրինակ, Ավտոդողերի գործարանի ավտոդող հավաքողներ Եղիազարյանը և Կարապետյանը, սոցիալիստական մրցության մեջ մտնելով Յարոսլավլի Ավտոդողերի գործարանի ստախանովականների հետ, նորմայով սահմանված 24-ի փոխարեն օրական հավաքում են 54 ավտոդող։ Կոմպրեսորների գործարանի ձուլող Մանուկյանը կատարում է 3,5 նորմա ի հաշիվ ձուլման տեխնոլոգիայի փոփոխման, կարբիդագործ Մակարյանը ագրեգատային նորմաները սիստեմատիկորեն կատարում է 120 տոկոսով։ Լենինականի Տեքստիլ կոմբինատի Մանարան ֆաբրիկայի 21 բանվորուհիներ վաղուց կատարել են իրենց հնգամյա պլանը և աշխատում են 1951—1952 թվերի հաշվին։ Լենինականի Տեքստիլ կոմբինատի մանածագործուհի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ Լիխաչևան, որն

աշխատում է 4 մեքենայի 8 երեսի վրա, սիստեմատիկորեն գերակատարում է իր նորմաները։

Լենինականի Տոգեքարշային դեպոյում ինժեներա-տեխնիկական աշխատողները իրենց ուշադրությունը բևեռել են ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, անվանի մեքենավար Աբաջյանի աշխատանքի մեթոդի ուսումնասիրության վրա, այն մյուս մեքենավարների սեփականությունը դարձնելու նպատակով և այդ ուղղությամբ արդեն առկա են առաջին հաջողությունները։

Մեր երկրի աշխատավորությունը հսկայական խանդավառությամբ ընդունեց Սովետական կառավարության որոշումները Վոլգայի վրա Կույբիշևյան և Ստալինգրադյան, Դնեպրի վրա Կախովկայի հիդրոէլեկտրակայանների, Գլխավոր Թուրքմենական, Հյուսիս-Ղրիմյան և Հարավ-Ուկրաինական ջրանցքների կառուցման մասին։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական շատ ձեռնարկությունների բանվորներ պարտավորություն են ստանձնել արագ և բարձր որակով կատարել կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները։ Հայաստանի արդյունաբերական շատ ձեռնարկություններ արդեն առաջին սարքավորումներն ու մեքենաներն ու-



ղարկել են Ստալինգրադ և Կույբիշև, Թուրքմենիա և Ուկրաինա։

***

Սովետական Հայաստանի 30-ամյակը խոշոր հաջողություններով է դիմավորում ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը։ Հայաստանի գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները պատմական կարճ ժամանակամիջոցում հասան զգալի հաջողությունների ինչպես ցանքատարածությունների ընդարձակման, այնպես էլ բերքատվության բարձրացման ուղղությամբ։

Հացահատիկային կուլտուրաների համախառն բերքն զգալի չափով գերազանցել է նախապատերազմյան մակարդակը։ Ընթացիկ տարում ռեսպուբլիկան ժամկետից շուտ կատարեց հացամթերման պետական պարտավորությունը, երկրին պլանից դուրս հանձնելով 320.000 փութ հացահատիկ։

Այսպես օրինակ, համախառն արտադրանքը 1949 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, կազմել է բամբակինը՝ 135 տոկոս, ծխախոտինը՝ 240 տոկոս, շաքարի ճակնդեղինը՝ 274 տոկոս, կարտոֆիլինը՝ 321 տոկոս։

Այս տարի Հայկական ՍՍՌ-ի կոլխոզները ժամկետից շուտ կատարեցին, բամբակի

հումքի հանձնման պետական պլանը, 19.174 ցենտներ ավելի բամբակ հանձնելով երկրին, քան անցյալ տարի։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի տարիներին Հայաստանի գյուղատնտեսությունը հասավ նախապատերազմյան մակարդակին և այժմ զգալի վերելք է ապրում։ Ցանքային տարածությունը 1950 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, ընդարձակվեց ավելի քան 11 տոկոսով։ 1948 թվականին գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունը, 1947 թվականի համեմատությամբ, ավելացավ 6.300 հեկտարով. դա նշանակում է, որ ցանքատարածությունների ընդարձակման հնգամյա պլանը կատարվել է 1948 թվականին։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում զգալի չափով աճեց գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Եթե հացահատիկային կուլտուրաների 1940 թվականի բերքատվությունն ընդունենք 100 տոկոս, ապա 1945 թվականին այն կազմել է 108,4 տոկոս, հետպատերազմյան հնգամյակի երկրորդ տարում՝ 147 տոկոս։

Հետպատերազմյան հնգամյակում զգալի կերպով աճել է գյուղատնտեսության տեխ-



նիկական զինվածությունը։ 1940 թվականի 33 ՄՏԿ-ի փոխարեն, այժմ ռեսպուբլիկայում գործում են 46 ՄՏ կայան։

Ներկայումս էլեկտրիֆիկացված է Հայաստանի կոլխոզների ավելի քան 60 տոկոսը, էլեկտրիֆիկացված կոլխոզներից ավելի քան 160-ն էլեկտրաէներգիան գործադրում են նաև գյուղատնտեսական աշխատանքների պրոցեսներում։

Հետպատերազմյան շրջանում հաջողությամբ լուծելով հացահատիկի պրոբլեմը, բոլշևիկյան պարտիան գյուղատնտեսության զարգացման կենտրոնական խնդիրը համարեց հանրային անասնաբուծության զարգացումը։ Այդ խնդրի լուծման համար հաստատվեց անասնաբուծության զարգացման եռամյա պլան։ Հայկական ՍՍՌ-ն հաջողությամբ է իրականացնում հանրային անասնաբուծության զարգացման եռամյա պլանը։ 1940 թվականի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1950 թվականին աճել է 30,6 տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 80,6 տոկոսով, խոզերինը՝ 103,4 տոկոսով։

Ռեսպուբլիկայում զգալի չափով ընդարձակվել է ջրովի հողերի տարածությունը։ Դեռ 1945 թվականին ոռոգվող տարածություննե-

րը կազմում էին 200 հազար հեկտար, 1913 թվականի 97 հազար հեկտարի և 1919 թվականի 60 հազար հեկտարի դիմաց։ Սովետական իշխանության տարիներին մեր ռեսպուբլիկայում կառուցվեցին բազմաթիվ ջրանցքներ։

Կոլխոզային գյուղացիության դգալի հաջողությունների է հասել բնության վերափոխման ստալինյան հանճարեղ պլանի կենսագործման և գյուղատնտեսության մեջ միչուրինյան առաջավոր ագրոբիոլոգիայի սկզբունքների արմատավորման գործում։ Ռեսպուբլիկայի բազմաթիվ կոլխոզներ ու առանձին բրիգադաներ այս տարի աճեցրել են բարձր բերք. Նոր Բայազետի շրջանի Հացառատ գյուղի կոլխոզը 600 հեկտար տարածությունից ստացել է հեկտարից 27 ցենտներ միջին բերք, Աղինի շրջանի Մարալիկ գյուղի կոլխոզը 300 հեկտարից ստացել է 30 ցենտներ ցորենի միջին բերք, իսկ Թալինի շրջանի Փիրմալաք գյուղի կոլխոզը 581 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից հավաքել է 28 ցենտներ հացահատիկի միջին բերք։ Բարձր բերք են աճեցրել ռեսպուբլիկայի Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, Ղանգիբասարի բամբակագործները։



Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած հաջողությունների համար մինչև 1950 թվականի սեպտեմբերի 1-ը ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել են ռեսպուբլիկայի 2.856 առաջավորներ, որոնցից Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչման է արժանացել 117 մարդ։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության ձեռք բերած հաջողությունները պայմանավորեցին կոլխոզների կազմակերպական ու տնտեսական ամրապնդումը։ 1940 թվականի համեմատությամբ, կոլխոզների դրամական եկամուտները 1949 թվականին ավելացան ավելի քան 4 անգամ։ Միլիոնատեր կոլխոզների թիվը 1940 թվականի 40-ից, 1949 թվականին հասել է 112-ի։

Կոլխոզները կազմակերպորեն ու տնտեսապես ամրապնդելու, գյուղատնտեսության հետագա հզոր վերելքն ապահովելու գործում կարևոր նշանակություն ունի նրանց խոշորացումը։ Խոշորացված կոլխոզների առաջին տարվա աշխատանքի փորձը ցույց տվեց, որ նրանք ունեն մեծ հնարավորություններ բարձրացնելու գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը, կիրառելու ճիշտ ցանքաշրջանառություն, բարձրացնելու արտ-

տեսության եկամտաբերությունը, յուրացնելու նոր հողային մասիվներ։

Կոլտնտեսային կարգերի հաղթանակն արագ թափով վերացնում է քաղաքի և գյուղի միջև եղած դարավոր տարբերությունը։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները ներկայումս ձեռնամուխ են եղել կենսագործելու ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1950 թվականի մայիսի 30-ի պատմական որոշումը՝ ցորենի ցանքատարածությունների ավելացնելու և բերքատվությունը բարձրացնելու միջոցով Հայկական ՍՍՌ-ն սեփական հացի պաշարով բավարարելու վերաբերյալ։ Այդ նպատակով, մինչև 1957 թվականը Հայկական ՍՍՌ կոլխոզներում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունն ավելացվելու է 50 տոկոսով և ցորենի միջին բերքատվությունը բարձրացվելու և հասցվելու է 22—25 ցենտների։ Այս խնդրի իրականացումը պահանջում է ժամանակին ավարտել ու շահագործման հանձնել Արզնի—Շամիրամ ոռոգիչ սիստեմը, Թալինի ոռոգիչ սիստեմը, Սարուրին Ջանգվի ջրանցքը, Հոկտեմբերյանի ջրանցքի ջրհան կայանը և այլ սիստեմներ։

Ռեսպուբլիկայի կոլխոզների տնտեսական հաջողությունները և ամրապնդումն ա-



պահովեցին կոլխոզնիկների նյութական-կուլտուրական բարեկեցության անշեղ վերելքը։

Գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած այս հաջողությունները կրկին անգամ ցույց են տալիս սոցիալիստական գյուղատնտեսության, կոլխոզային կարգերի ուժն ու կենսունակությունը։

***

Անցած 30 տարիները հանդիսանում են Սովետական Հայաստանի աշխատավոր մասսաների նյութական դրության բարելավման, նրա կուլտուրայի ծաղկման ու բուռն վերելքի տարիներ։ Արդյունաբերության ու գյուղատնտեսության վերելքը պայմանավորեց բանվորների և գյուղացիների եկամուտների հսկայական աճը։ Աշխատավորության նյութական, կուլտուրական մակարդակի անշեղ վերելքի փայլուն ապացույցը հանդիսանում է սովետական Պետական բյուջեն, որի խոշոր մասը հատկացված է սովետական մարդկանց սոցիալ-կուլտուրական կարիքների բավարարմանը։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի առաջին տարիների ընթացքում ռեսպուբլիկայում շահագործման է հանձնվել ավելի քան 460 հազար քառակուսի մետր

բնակելի տարածություն։ 1940 թվականի համեմատությամբ բնակարանային ֆոնդն աճել և 1949 թվականին կազմել է 131 տոկոս։ Այդ նույն ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի գյուղերում կառուցվել է ավելի քան 10 հազար բնակելի շենք։

Վերջին տասը տարվա ընթացքում Երևանում շահագործման է հանձնվել ավելի քան 600 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Հատուկ ուշադրություն է դարձվում անհատական բնակարանային շինարարությանը։

Հսկայական են հայ ժողովրդի ձեռք ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի, գիտության, արվեստի նվաճումները։ Սովետական իշխանության 30 տարիների ընթացքում Հայաստանում տեղի ունեցավ խսկական կուլտուրական ռևոլուցիա։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում ռեսպուբլիկայում հաջողությամբ իրագործվում է ընդհանուր, յոթնամյա պարտադիր ուսուցումը։ Ռեսպուբլիկայի 1159 դպրոցներում այժմ սովորում է ավելի քան 300 հազար աշակերտ։

Ընթացիկ ուսումնական տարում ռեսպուբլիկայի դպրոցներում աշխատում է ա-



վելի քան 15 հազար ուսուցիչ։ Սովետական Հայաստանը վաղուց դարձել է համատարած գրագիտության երկիր։

Բոլորովին հակառակ պատկեր են ներկայացնում Սովետական Հայաստանին սահմանակից կապիտալիստական Իրանը և Թյուրքիան, որոնք դարձել են ամերիկյան իմպերիալիզմի կիսագաղութները։ Իրանի ամբողջ բնակչության 85 տոկոսը և Թյուրքիայի ազգաբնակչության 66 տոկոսն անգրագետ են։ Թյուրքիայի գյուղերի 75 տոկոսը չունեն դպրոց։ ԱՄՆ-ում ավելի քան 6 միլիոն երեխա զրկված են դպրոց հաճախելու հնարավորությունից։

Նախասովետական Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն դպրոց, իսկ այժմ Հայկական ՍՍՌ-ում գործում են 17 բարձրագույն ուսումնական հաստատություններ, որտեղ սովորում է մոտ 15 հազար մարդ, կամ 1 բարձրագույն ուսումնական հաստատությունում՝ շուրջ 76 հազար մարդում։

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության խոշոր նվաճում հանդիսացավ Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի հիմնադրումը։ Ռեսպուբլիկայի ավելի քան 58 գիտա-հետազոտական ինստիտուտ-

ներում և այլ հաստատություններում աշխատում է 1874 գիտական աշխատող՝ տասնյակ ակադեմիկոսներ, գիտության դոկտորներ ու հարյուրավոր գիտության թեկնածուներ։ Ակադեմիայի ինստիտուտները և գիտա-հետազոտական հաստատությունները իրենց նվաճումներով լուրջ ավանդ են մտցնում սովետական առաջավոր գիտության ֆոնդը։

Սովետական գիտության զարգացման գործում վճռական նշանակություն ունեցան ընկեր Ստալինի հոդվածները լեզվաբանության վերաբերյալ։

Կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի որոշումներն իդեոլոգիական հարցերի վերաբերյալ, զգալի հաջողությունների են հասել սովետահայ գրականությունն ու արվեստը։

Վերջին տարիներին գիտության ու տեխնիկայի, գրականության ու արվեստի 33 ներկայացուցիչներ արժանացան Ստալինյան մրցանակի լաուրեատի կոչման։ Ստալինյան մրցանակներ են շնորհվել Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի պրեզիդենտ Վ. Համբարձումյանին, Բյուրականի Աստղադիտարանի ավագ գիտական



աշխատող Մարգարյանին, կոմպոզիտոր Ա. Հարությունյանին, Գեոլոգիական ինստիտուտի մի խումբ երկրաբանների և Գ. Սունդուկյանի անվան դրամատիկ պետական թատրոնի մի խումբ արտիստների։

Սովետական իշխանության տարիներին հայերեն լեզվով մեծ տիրաժով հրատարակվել և հայ աշխատավորության սեփականությունն են դարձել մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները։

Հետպատերազմյան տարիներին զգալի չափով բարելավվեց աշխատավորների կուլտուր-մասսայական սպասարկումը։ Գրադարանների թիվը 908-ից (1940 թ.) հասավ 1437-ի, ակումբային հիմնարկներինը՝ 837-ից՝ 1292-ի, կինոսարքավորումներինը՝ 196-ից՝ 312-ի։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի տարիներին զգալի չափով քաղաքներում և գյուղերում բարելավվել է աշխատավորության բուժսպասարկման գործը։ Հայկական ՍՍՌ-ում աշխատում են 2333 բժիշկ։

Կոմունիզմի շինարարության մեծ նախագծումների իրագործման համար մղվող պայքարում անշեղորեն ամրապնդվում է սովետական հասարակության բարոյա-քա-

ղաքական միասնությունը, սովետական ջերմ ու կենսատու հայրենասիրությունը, ժողովուրդների ստալինյան բարեկամությունը։

«... Բարեկամությունը ՍՍՌՄ ժողովուրդների միջև մեծ և լուրջ նվաճում է,—ասում է ընկեր Ստալինը։ Որովհետև քանի այդ բարեկամությունը գոյություն ունի, մեր երկրի ժողովուրդները ազատ և անպարտելի կլինեն։ Ոչ ոք սարսափելի չէ մեզ համար, ո՛չ ներքին, ո՛չ արտաքին թշնամիները, քանի այդ բարեկամությունն ապրում և բարգավաճում է»։

***

Հայ ժողովուրդն իր ազատության և երջանկության 30-րդ տարին տոնում է խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի է՛լ ավելի ամրապնդման ու հզորացման և հակադեմոկրատական իմպերիալիստական լագերի ագրեսիվ քաղաքականության դեմ մղվող պայքարի պայմաններում։

Ոգևորված Սովետական Մեծ Միության պատմական հաղթանակներով, ժողովրդական դեմոկրատիայի երկրները՝ Ալբանիան, Բուլղարիան, Հունգարիան, Լեհաստանը, Ռումինիան, Չեխոսլովակիան տնտեսական



ու քաղաքական մեծ վերելք են ապրում։

Պատմական մեծ հաղթանակներ ձեռք բերելով, չին մեծ ժողովուրդն իր հայրենիքում կերտում է սեփական երջանկությունն ու բախտը, դրանով իսկ ամրապնդում խաղաղության ու դեմոկրատիայի գործը։

Խաղաղության համար մարտնչողների առաջին շարքերում ընթանում է սովետական ժողովուրդը։ Կոմունիստական հասարակության կառուցման, սոցիալիստական տերության հզորության ամրապնդման ուղղությամբ իրենց կատարած ոգեշունչ, ստեղծարար աշխատանքով սովետական մարդիկ մեծ ավանդ են մուծում խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման գործում։ Սովետական ժողովուրդը հսկայական ոգևորությամբ դիմավորեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի պատմական Հայտարարությունը՝ ատոմային զենքն արգելելու վերաբերյալ խաղաղության կողմնակիցների Համաշխարհային Կոնգրեսի Մշտական Կոմիտեի Կոչի հետ համերաշխության մասին։

Այդ Կոչի տակ ստորագրել են 115 միլիոն 275 հազար 940 սովետական քաղաքացիներ։ Սովետական Հայաստանում Կոչի տակ ստորագրել են 900.432 աշխատավորներ։

Այսպիսով Սովետական Միության ամբողջ
մեծահասակ բնակչությունը միահամուռ
կերպով արտահայտվել է խաղաղության
օգտին՝ պատերազմի դեմ։ Սովետական Հա-
յաստանի չափահաս քաղաքացիները միա-
համուռ կերպով, Սովետական Միության
բոլոր ժողովուրդների հետ միասին, իրենց
վճռական կամքը դրսևորեցին խաղաղու-
թյան օգտին։

Հայ ժողովուրդը, սովետական բազմազգ
պետության ժողովուրդների հետ միասին,
կանգնած է խաղաղության կողմը։ Ակտիվո-
րեն մասնակցելով խաղաղության կողմնա-
կիցների շարժմանը, նա իր անձնվեր աշ-
խատանքով ամրապնդում է ամբողջ աշխար-
հի խաղաղության պատվարի՝ Սովետական
Միության հզորությունը։ Խաղաղության հա-
մար պայքարող սովետական ժողովուրդների
հետ միասին, հայ ժողովուրդը վստահ է, որ
խաղաղության արդար գործը կհաղթանակի։
Խաղաղությունը կհաղթի պատերազմին, ո-
րովհետև խաղաղության համար մղվող պայ-
քարը ոգեշնչում ու կազմակերպում է մեր
թանկագին, սիրելի ընկեր ՍՏԱԼԻՆԸ։

Հայ ժողովուրդն իր երջանկության 30-րդ
տարեդարձը տոնում է Հայկական ՍՍՌ-ի



աշխատավորների դեպուտատների շրջանա-
յին, քաղաքային, գյուղական և ավանային
Սովետների ընտրությունների նախապատ-
րաստման շրջանում։

Դեկտեմբերի 24-ի ընտրությունները կը-
հանդիսանան հայ ժողովրդի հայրենասիրու-
թյան նոր ցույցը, նրանք կրկին անգամ
ցույց կտան հայ ժողովրդի միասնությունն ու
համախմբվածությունը՝ բոլշևիկյան պար-
տիայի և սիրելի առաջնորդ Մեծ Ստալինի
շուրջը։ Ինչպես միշտ, այնպես էլ այս ան-
գամ, հայ ժողովուրդն իր ձայնը կտա կո-
մունիստների և անկուսակցականների ստա-
լինյան բլոկի թեկնածուների օգտին։

Հայ ժողովուրդը, տոնելով իր սովետական
պետականության ու ազգային վերածննդի
30-րդ տարեդարձը, հանրագումարի բերելով
պայքարի ու հաղթանակի արդյունքները, իր
անհուն երախտագիտությունն ու նվիրվա-
ծությունն է հայտնում կոմունիստական
պարտիային, Սովետական կառավարությանը
և ժողովուրդների իմաստուն առաջնորդ, հայ
ժողովրդի ազատարար մեծ Ստալինին։

Ընկեր Ստալինի գլխավորությամբ, ՍՍՌՄ
ժողովուրդների հետ միասին, հայ ժողո-
վուրդը հաջողությամբ ընթանում է դեպի
կոմունիզմ։

—O—

# ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ Է ԱՇԽԱՐՀՈՒՄ

*1936 թվականի նոյեմբերին տեղի ունեցավ Սովետների Համամիութենական 8-րդ Արտակարգ համագումարը։ Համագումարում ՍՍՌՄ Կոնստիտուցիայի նախագծի մասին զեկուցումով հանդես եկավ ընկեր Ստալինը։*

*Մեծ առաջնորդը ամենայն մանրամասնությամբ շարադրեց ՍՍՌՄ Կոնստիտուցիայի հիմունքները, ցայտուն կերպով վեր հանեց սովետական դեմոկրատիայի գերազանցությունը կապիտալիստական երկրների դեմոկրատիայի նկատմամբ և ցույց տվեց, որ ՍՍՌՄ Կոնստիտուցիան աշխարհում միակ, մինչև վերջը դեմոկրատական Կոնստիտուցիան է։ 1936 թվականի դեկտեմբերի 5-ին Սովետների 8-րդ Արտակարգ համագումարն ընդունեց ՍՍՌՄ-ում հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիան։ Սովետական ժողովուրդը նոր Կոնստիտուցիան կոչեց նրա ստեղծողի անունով՝ Ստալինյան Կոնստիտուցիա։*



*Ստալինյան Կոնստիտուցիայի հիմքում դրված են սոցիալիզմի սկզբունքները, որոնք արդեն իրականացված են ՍՍՌՄ-ում՝ արտադրության միջոցների ու գործիքների սոցիալիստական սեփականությունը, շահագործման ու շահագործող դասակարգերի վերացումը։ Մեր երկրում ընդմիշտ չքացել են աշխատավորության համար չարիք հանդիսացող կրիզիսները, գործազրկությունն ու աղքատությունը։ Ստեղծվել են բոլոր պայմանները սովետական հասարակության անդամների ունևոր ու կուլտուրական կյանքի համար։ Աշխատավորների նյութական վիճակի բարելավումն իր արտահայտությունն է գտնում բնակչության գնողունակության աճի և առևտրի շրջանառության ավելացման մեջ։ 1950 թվականին մեր պետությունը— չհաշված տեղական ռեսուրսները— պետական և կոոպերատիվ խանութներն է ուղարկել բնակչությանը վաճառելու համար շատ ավելի սննդամթերք ու արդյունաբերական ապրանք, քան պատերազմից առաջ։*

*Սովետական պետությունը հսկայական միջոցներ է ծախսում սոցիալական ապահովության գծով նպաստներ տալու, արձա-*

կուրորտներ վճարելու, ձրի բժշկական օգնության համար։ Միայն 1949 թվականին պետությունը այդ նպատակով ծախսել է ավելի քան 110 միլիարդ ռուբլի։

ՍՍՌՄ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է աշխատավորներին։ Դրա փայլուն ապացույցը հանդիսանում են ՍՍՌՄ Գերագույն Սովետի այս տարվա գարնանը տեղի ունեցած ընտրությունների արդյունքները։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի կազմում ընտրված 1316 դեպուտատներից 318-ը բանվորներ են, 315-ը գյուղացիներ, իսկ մնացած մասը մտավոր աշխատանքի մարդիկ են, Սովետական Բանակի շարքերում ծառայողներ։

Ստալինյան Կոնստիտուցիան ապահովում է բոլոր ազգերի և ռասաների իսկական իրավահավասարություն՝ մեր երկրի տնտեսական, հասարակական, պետական և կուլտուրական կյանքի բոլոր ասպարեզներում։

Ստալինյան Կոնստիտուցիան ոչ միայն արձանագրում է սովետական քաղաքացիների դեմոկրատական իրավունքները, այլև ապահովում է այդ իրավունքներից օգտվելու բոլոր հնարավորությունները։ 1950 թվի



մարտին ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին մասնակցեցին 111 միլիոնից ավելի մարդ՝ բոլոր ընտրողների 99,98 տոկոսը։ Այդ ընտրություններին կոմունիստների և անկուսակցականների բլոկի կողմից համատեղ առաջադրված թեկնածուների օգտին ձայն տվեցին քվեարկությանը մասնակցած ընտրողների 99,7 տոկոսը։ Ժողովրդի այդպիսի միասնություն, որը արդյունք է ստալինյան հանճարով ստեղծված լայն դեմոկրատիայի, չկա և չի կարող լինել կապիտալիստական և ոչ մի երկրում։

Սովետական դեմոկրատիան դեմոկրատիա է աշխատավորների համար, այսինքն՝ դեմոկրատիա բոլորի համար։ Սովետական Միությունում «ո՛չ թե գույքային դրությունը, ո՛չ թե ազգային ծագումը, ո՛չ թե սեռը, ո՛չ թե պաշտոնեական դրությունը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակություններն ու անձնական աշխատանքն են որոշում նրա դիրքը հասարակության մեջ» (Ստալին)։

Ստալինյան Կոնստիտուցիան գործնականում ապահովում է քաղաքացիների հավասարությունը, բոլոր քաղաքացիների համար ապահովում է աշխատանքի իրավունք, հան-

զբաղմունքի իրավունք, կրթության իրավունք, նյութական ապահովության իրավունք ծերության, ինչպես նաև հիվանդության և աշխատունակությունը կորցնելու դեպքում։

ՍՍՌՄ յուրաքանչյուր ժողովուրդ բոլոր հնարավորություններն ունի զարգացնելու իր ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Մոտ 40 ազգություն սովետական իշխանության օրոք առաջին անգամ ստացան իրենց այբուբենը, իրենց գիրն ու գրականությունը։ Ադրբեջանում և Ուզբեկստանում նախքան սովետական իշխանությունը բնակչության 90 տոկոսը անգրագետ էր, իսկ 1949 թվին այնտեղ անգրագիտությունն արդեն լիկվիդացված էր։ Մինչդեռ Ուզբեկստանին սահմանակից Իրանում ներկայումս անգրագետները կազմում են բնակչության մոտ 85 տոկոսը, Թյուրքիայում՝ մոտ 66 տոկոսը։

ՍՍՌՄ Կոնստիտուցիայով կնոջը տրվում է տղամարդուն հավասար իրավունքներ տնտեսական և հասարակական գործունեության բոլոր բնագավառներում։

Սովետական կանայք ակտիվորեն օգտագործում են Ստալինյան Կոնստիտուցիայով իրենց տրված իրավունքները։ ՍՍՌՄ Գերա-



գույն Սովետի դեպուտատների թվում կա 280 կին։ Ավելի քան 327 հազար կանայք աշխատում են որպես ինժեներներ ու տեխնիկներ։ Գիտության, գյուտարարության, գրականության և արվեստի ասպարեզներում կատարած աչքի ընկնող աշխատանքների համար 289 կանանց շնորհված են Ստալինյան մրցանակներ։ Սովետական դպրոցներում աշխատում են 900 հազար ուսուցիչներ։ Ավելի քան կես միլիոն կանայք պարգևատրված են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով, 1.600 կին ստացել են Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում։

Ստալինյան Կոնստիտուցիան, սոցիալիստական դեմոկրատիան ամրապնդելու նպատակով, ապահովում է խոսքի, մամուլի, ժողովների և միտինգների ազատություն, հասարակական կազմակերպություններում միավորվելու իրավունք, անձի անձեռնմխելիություն, բնակարանի անձեռնմխելիությունն ու նամակագրության գաղտնիությունը, ապաստանի իրավունք այն օտարերկրյա քաղաքացիների համար, որոնք հետապնդվում են աշխատավորների շահերը պաշտպանելու, կամ գիտական

գործունեության, կամ ազգային ազատագրական պայքարի պատճառով։

Մեր երկրում մամուլի ազատությունն ապահովվում է աշխատավորներին և նրանց կազմակերպություններին տպարաններ և թղթի պաշարներ տրամադրելով՝ գրքեր, ժուռնալներ, թերթեր հրատարակելու համար։ Սովետական Միության մեջ լույս է տեսնում 33,5 միլիոն օրինակ ընդհանուր տիրաժով 7.700 թերթ։ Գրքերն ու թերթերը հրատարակվում են ՍՍՌՄ ժողովուրդների 119 լեզուներով։

Խոսքի, ժողովների և միտինգների, փողոցային երթերի ու ցույցերի ազատությունը մեզ մոտ ապահովվում է նրանով, որ հասարակական բոլոր շենքերը, կապի միջոցները պատկանում են ժողովրդին, գտնվում են աշխատավորների տրամադրության տակ։

Ահա թե ինչու, ինչպես նշում է ընկեր Ստալինը, մեր Կոնստիտուցիայի դեմոկրատիզմը «ոչ թե «սովորական» և «համրաճանաչ» դեմոկրատիզմ է ընդհանրապես, այլ սոցիալիստական դեմոկրատիզմ»։

Ստալինյան Կոնստիտուցիան իր լայն դեմոկրատական սկզբունքներով աշխարհի բոլոր երկրների աշխատավորներին ցույց է



տալիս նոր դարաշրջանի, նոր հասարակության ռեալ պատկերը, որտեղ ժողովուրդն ազատագրված է կապիտալիզմի ստրկությունից, գաղութարարների ու իմպերիալիստների ճնշումից, որտեղ հաղթանակել է սոցիալիզմը և հաստատվել է ծավալուն և մինչև վերջը հետևողական դեմոկրատիա։

Միանգամայն այլ է պատկերը կապիտալի աշխարհում։ Այնտեղ՝ արտադրության միջոցներն ու գործիքները գտնվում են ազգաբնակչության չնչին մասը կազմող մի բուռ շահագործողների ձեռքում։ Բուրժուական երկրներում պետական իշխանությունը գտնվում է խոշոր կապիտալիստների ձեռքում։ Անգլիայում պառլամենտի 170 դեպուտատներ պատերազմի նախօրեին զբաղեցնում էին 650 դիրեկտորական կամ այլ պոստեր։ Դեպուտատ Չարլզ Բերրին «համատեղության կարգով» աշխատավարձ էր ստանում 34 խոշոր կապիտալիստներից։ Կապիտալիստական երկրներում դեմոկրատիան գոյություն ունի միայն թղթի վրա։ 1945 թվին տեղի ունեցած անգլիական պառլամենտի ընտրություններին չմասնակցեց բոլոր ընտրողների քառորդ մասը։ 1948 թվին ԱՄՆ-ի կոնգրեսի ընտրություններին մասնակցեց

բոլոր ընտրողների կեսից պակաս։ ԱՄՆ-ում օրավարձով և սեզոնային աշխատանք կատարող 14 միլիոն բանվորներ նստակեցության, կրթական, գույքային ցենզ չունենալու պատճառով զրկված են ընտրություններին մասնակցելուց։ 13 միլիոն նեգրեր զրկված են ընտրություններին մասնակցելու իրավունքից։ Սահմանափակված է կանանց և զինծառայողների ընտրական իրավունքները 29-ը նահանգներում։ Արգենտինայում և Մեքսիկայում կանայք չունեն ընտրելու և ընտրվելու իրավունք։

Ինչպես ամերիկյան, այնպես և անգլիական իմպերիալիստները աջ ու ձախ աղմըկում են, որ իրենց երկրներում գոյություն ունի խոսքի, ժողովների ազատություն։ Իսկ հենց այդ նույն իմպերիալիստները արգելեցին Խաղաղության կողմնակիցների Համաշխարհային երկրորդ կոնգրեսի գումարումը Անգլիայում։ Այդ կոնգրեսի բոլոր դելեգատների համար իր դռները լայն բաց արեց ժողովրդա-դեմոկրատական Լեհաստանը։

Ստալինյան Կոնստիտուցիան պարզ կերպով ցույց է տալիս, որ այն բոլորը, ինչ իրականացված է Սովետական Միությու-



նում, կարող է իրականացվել նաև աշխարհի մյուս երկրներում։

Ընկեր Ստալինը Սովետների Համամիութենական 8-րդ Արտակարգ համագումարում տվել է մեր Կոնստիտուցիայի համաշխարհային պատմական նշանակությունը. «Այժմ, երբ ֆաշիզմի պղտոր ալիքը լուտանք է թափում բանվոր դասակարգի սոցիալիստական շարժման վրա և ցեխի հետ է խառնում քաղաքակիրթ աշխարհի լավագույն մարդկանց դեմոկրատական ձգտումները, ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան մի մեղադրական ակտ կլինի ֆաշիզմի դեմ, մի ակտ, որն ասում է, թե սոցիալիզմը և դեմոկրատիան անպարտելի են։ ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան բարոյական օգնություն և իրական օժանդակություն կլինի բոլոր նրանց համար, ովքեր այժմ պայքար են մղում ֆաշիստական բարբարոսության դեմ»։

Պատմությունը ցույց տվեց, որ իրոք սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերը անհաղթելի են։ Այն ժամանակ, երբ ՍՍՌՄ-ում, և սոցիալիզմի ուղին ոտք դրած ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, Չինական ժողովրդական ռեսպուբլիկայում ծաղկում է տնտեսությունն ու կուլտուրան, իսկական

ժողովրդական դեմոկրատիան, ֆաշիզմի ուղին բռնած ամերիկա-անգլիական իմպերիալիստները, ոչնչացնելով բոլոր տեսակի դեմոկրատական իրավունքներ, ամբողջ տնտեսությունը փոխադրում են ռազմական ռելսերի վրա, տենդագին կերպով նախապատրաստվում համաշխարհային նոր պատերազմի, միլիոնավոր մարդկային կյանքերի ոչնչացման։

Բայց Ստալինյան Կոնստիտուցիայի վառ շողերի ներքո ծաղկող ու բարգավաճող Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների հզոր Միությունը բացել է աշխարհի աշխատավոր ու շահագործվող մարդկանց աչքերը։ Սովետական Միության օրինակով նրանք տեսնում են, որ ամեն տեսակ շահագործումից իրենց ազատագրումը հնարավոր է միայն կապիտալիստների ու կալվածատերերի իշխանության տապալմամբ, աշխատավոր դասակարգերի իշխանության հաստատմամբ։ Ստալինյան Կոնստիտուցիան լուսավորում է կապիտալի լծի տակ տառապող աշխատավոր մարդկության այդ պայքարի ուղին։

Վ. ԱՎԱԳՅԱՆ

—O—



# ԾԱՂԿՈՒՄ ՈՒ ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ԵՐԵՎԱՆԸ

(Թվեր և փաստեր)

✪ Ստալինյան հնգամյակների տարիներին անճանաչելիորեն ծաղկել ու բարգավաճել է մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանը։ Բոլշևիկների մեծ պարտիան, սովետական պետությունը ոչինչ չեն խնայում Երևանը բարեկարգ ու կուլտուրական, սովետական մարդկանց բոլոր պահանջները բավարարող, արդյունաբերական խոշոր քաղաք դարձնելու համար։ Քաղաքի աճման ու զարգացման պերճախոս վկան է հանդիսանում նրա բյուջեն։ 1940 թվականին Երևանի բյուջեն կազմում էր 68 միլիոն ռուբլի, 1947 թվականին այն կազմեց 119 միլիոն ռուբլի, իսկ այս տարվա բյուջեն հաստատված է 161 միլիոն ռուբլի, այսինքն նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ այն կազմում է 237 տոկոս։

ժողովրդական դեմոկրատիան, ֆաշիզմի ուղին բռնած ամերիկա-անգլիական իմպերիալիստները, ոչնչացնելով բոլոր տեսակի դեմոկրատական իրավունքներ, ամբողջ տնտեսությունը փոխադրում են ռազմական ռելսերի վրա, տենդագին կերպով նախապատրաստվում համաշխարհային նոր պատերազմի, միլիոնավոր մարդկային կյանքերի ոչնչացման։

Բայց Ստալինյան Կոնստիտուցիայի վառ շողերի ներքո ծաղկող ու բարգավաճող Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների հզոր Միությունը բացել է աշխարհի աշխատավոր ու շահագործվող մարդկանց աչքերը։ Սովետական Միության օրինակով նրանք տեսնում են, որ ամեն տեսակ շահագործումից իրենց ազատագրումը հնարավոր է միայն կապիտալիստների ու կալվածատերերի իշխանության տապալմամբ, աշխատավոր դասակարգերի իշխանության հաստատմամբ։ Ստալինյան Կոնստիտուցիան լուսավորում է կապիտալի լծի տակ տառապող աշխատավոր մարդկության այդ պայքարի ուղին։

Վ. ԱՎԱԳՅԱՆ

—O—



# ԾԱՂԿՈՒՄ ՈՒ ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ Է ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՄԱՅՐԱՔԱՂԱՔ ԵՐԵՎԱՆԸ

(Թվեր և փաստեր)

✪ Ստալինյան հնգամյակների տարիներին անճանաչելիորեն ծաղկել ու բարգավաճել է մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանը։ Բոլշևիկների մեծ պարտիան, սովետական պետությունը ոչինչ չեն խնայում Երևանը բարեկարգ ու կուլտուրական, սովետական մարդկանց բոլոր պահանջները բավարարող, արդյունաբերական խոշոր քաղաք դարձնելու համար։ Քաղաքի աճման ու զարգացման պերճախոս վկան է հանդիսանում նրա բյուջեն։ 1940 թվականին Երևանի բյուջեն կազմում էր 68 միլիոն ռուբլի, 1947 թվականին այն կազմեց 119 միլիոն ռուբլի, իսկ այս տարվա բյուջեն հաստատված է 161 միլիոն ռուբլի, այսինքն նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ այն կազմում է 237 տոկոս։

✪ Երևանը Սովետական Հայաստանի արդյունաբերական խոշորագույն կենտրոնն է։ Քաղաքի գործարաններն ու ֆաբրիկաները երկրին տալիս են մետաղահատ դազգահներ, կոմպրեսորներ, հիդրոտուրբիններ, տրանսֆորմատորներ, գեներատորներ, մանրուղյա գործվածքներ, մետաքսաթել, կաշի, կոշկեղեն, հագուստեղեն, բազմատեսակ սննդամթերքներ ու խմիչքներ, պահածոներ, ժամացույցներ, օճառ, շինանյութ, լայն սպառման բազմապիսի առարկաներ։

Քաղաքի արդյունաբերության արտադրանքը 1949 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի հետ համեմատած, կազմեց 257 տոկոս, այսինքն աճեց 157 տոկոսով։ Եթե վերցնելու լինենք արդյունաբերական արտադրանքի թողարկման միջին ամսական մակարդակը, ապա 1950 թվին քաղաքի արդյունաբերությունը յուրաքանչյուր ամիս 180 տոկոսով ավելի արտադրանք է տալիս, քան 1947 թվականին։

✪ Մեկ բանվորի միջին արտադրողականությունը 1949 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, բարձրացավ 60 տոկո-



սով, իսկ 1948 թվականի նկատմամբ՝ 20,2 տոկոսով։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների բանվորները կատարում են իրենց պլանները և սահմանում բարձր արտադրողականության ռեկորդներ։

✪ 1947—1950 թվականների ընթացքում Երևանում կառուցվել և շահագործման են հանձնվել 29 արդյունաբերական ձեռնարկություններ, որոնց թվում Մետաղյա կոնստրուկցիաների, Էլեկտրալուսավորության սարքավորումների, Ավտոնորոգման գործարանները, № 3 հացի գործարանը, Շամպայն գինիների կոմբինատը, Շինանյութերի կոմբինատը, Կահույքի ֆաբրիկան, Լաքերի և ներկերի գործարանը, № 6 տպարանը և այլն։ Մոտակա ամիսներին շահագործման կհանձնվեն՝ Գարեջրի գործարանը, Էլեկտրալամպերի գործարանի 1-ին հերթը, Կոնյակի կոմբինատը և ուրիշ ձեռնարկություններ։

✪ Տարեց-տարի ավելանում են Երևանի վերակառուցման և նոր կառուցումների համար կատարվող կապիտալ ներդրումները։ Այսպես, 1949 թվականի կապիտալ ներդրումները, 1947 թվականի համեմատությամբ, կազմեցին 152 տոկոս։ Առանձնապես խոշոր ներդրումներ են կատարվել բը-

նակարանային շինարարության գծով, տարեց-տարի ավելի շատ բնակելի շենքեր են կառուցվում: Այսպես, օրինակ, 1947 թվականին շահագործման հանձնվեց 5000 քառ. մետր բնակելի տարածություն, 1948 թվականին՝ 27,9 հազ. քառ. մետր, 1949 թվականին 34,5 հազ. քառ. մետր: Այս տարի քաղաքում շահագործման կհանձնվի մոտ 40 հազ. քառ. մետր տարածություն: 1947—1949 թվականների ընթացքում քաղաքի բնակարանային շինարարության վրա ծախսվել է 100 միլիոն ռուբլի:

✪ 1947—1950 թվականների ընթացքում բարեկարգվել են Լենինի, Ստալինի, Միկոյանի, Օրջոնիկիձեի անվան պողոտաները և մի շարք ուրիշ փողոցներ, ուր կառուցվել են բազմաթիվ գեղեցիկ, բազմահարկ շենքեր: 1949 թվականին ավարտվեց Բերիայի, Մելիք Ադամյանի, Թամանցիների, Պռոշյանի փողոցների շինարարությունը և ասֆալտապատումը: Այս տարի ավարտվեց Ամիրյանի փողոցի՝ Ստալինյան պողոտան Լենինի հրապարակին միացնող մասի շինարարությունը, շուտով կավարտվի Ստալինյան պողոտայի շարունակության, Թումանյանի և Մոսկովյան փողոցների շինարարությունը: Այժմ Երևանում երկու անգամ ավելի աս-



ֆալտապատ փողոցներ կան, քան 1940 թվականին:

✪ Այս տարի ավարտվում է Քանաքեռի բարձրավանդակի վրա կառուցվող Հաղթանակի՝ 51 մետր բարձրություն ունեցող հոյակապ մոնումենտը, ընկեր Ստալինի մեծադիր արձանով: Արձանի բարձրությունը 16 մետր է:

✪ Այս տարի կավարտվի Կոմիտասի այգու ճակատի վերակառուցումը և ճարտարապետական գեղեցիկ ձևավորում ունեցող ջրավազանի կառուցումը Լենինի հրապարակում, որոնք ավելի գեղեցիկ տեսք կտան նրան: Ավարտվեցին Սովետական Միության կրկնակի Հերոս Նելսոն Ստեփանյանի և Խաչատուր Աբովյանի հուշարձանների շինարարական աշխատանքները:

✪ 1940 թվականին քաղաքն ուներ ընդամենը 197 հեկտար կանաչապատ տարածություն, իսկ այս տարի այն հասավ 1110 հեկտարի: Առաջիկա երեք տարիների ընթացքում նախատեսված է քաղաքի շուրջը ստեղծել 3 կանաչ գոտի՝ յուրաքանչյուրը 50-ական մետր լայնությամբ:

✪ 1950 թվականին, 1947 թվականի համեմատությամբ, քաղաքի ջրմուղի ցանցը ընդարձակվել է 41 տոկոսով, իսկ կոյուղու

ցանցը՝ 14 տոկոսով։ Ջրամատակարարման նոր գծի կառուցումը ավարտելուց հետո այս տարվա վերջում քաղաքին մատակարարվող խմելու ջրի քանակը կկրկնապատկվի։

✪ Այժմ քաղաքն ունի 45 կիլոմետր ընդհանուր երկարությամբ տրամվայի գիծ. նախատեսված է առաջիկա տասը տարում այն հասցնել 80 կիլոմետրի։ 1947 թվականի 25 միլիոն ուղևորի փոխարեն, տրամվայն այս տարի փոխադրելու է մոտ 38 միլիոն ուղևոր։ 1949 թվականին քաղաքում շահագործման հանձնվեց տրոլեյբուսը, որի գծերի երկարությունն այժմ հասնում է 23 կիլոմետրի։ Առաջիկա տարիների ընթացքում տրոլեյբուսի գծերի երկարությունը կկրկնապատկվի։ 1949 թվականին առաջին անգամ քաղաքի ազգաբնակչությանը սկսեցին սպասարկել տակսոմետրերը։ Այժմ քաղաքում գործում են 44 տակսոմետր՝ «Պոբեդա» մարկայի շքեղ ավտոներ։

✪ Քաղաքի բյուջեով ամեն տարի խոշոր հատկացումներ են կատարվում լուսավորության նպատակների համար։ Այս տարի ժողովրդական կրթության համար նախատեսված է ծախսել ավելի քան 45 միլիոն ռուբլի. այդ մոտ երկու անգամ ավելի է քան



1940, ինչպես նաև 1946 թվականին կատարված հատկացումները։ 1946 թվականին Երևանում կար 54 դպրոց՝ 39 հազար 369 աշակերտով, իսկ այս տարի քաղաքում գործում է 72 դպրոց, ուր սովորում է ավելի քան 52 հազար աշակերտ։ Քաղաքի 12 բարձրագույն ուսումնական հաստատություններում այժմ սովորում են 9871 ուսանող։ Այդ 860 մարդով ավելի է 1946 թվականին քաղաքի 11 բուհերում եղած ուսանողների քանակից։ Երևանում գործում են 52 գիտահետազոտական հաստատություն, ուր աշխատում են 848 գիտական աշխատող։

✪ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի տարիներին մեր պետությունը խոշոր ներդրումներ կատարեց քաղաքի ազգաբնակչության առողջապահության գործի դրվածքն ավելի բարելավելու համար։ Քաղաքի 1950 թվականի բյուջեով առողջապահության վրա նախատեսված է ծախսել 47,2 միլիոն ռուբլի՝ 1940 թվականին ծախսված 14,3 միլիոն ռուբլու փոխարեն։

Ցարական կառավարությունը Հայաստանի ազգաբնակչության յուրաքանչյուր շնչի վրա առողջապահական նպատակներով տարեկան ծախսում էր 25 կոպեկ։ Դաշնակների տիրապետության օրոք դրությունն ավելի վատ-

թարացավ։ Մեր պետությունը Սովետական Հայաստանի յուրաքանչյուր քաղաքացու վրա առողջապահության նպատակներով այս տարի ծախսելու է 104 ռուբլի։

Նախասովետական Հայաստանում միայն Երևանի պոլիցիայի վրա ավելի շատ դրամներ էին ծախսվում, քան ամբողջ Հայաստանի ժողովրդական կրթության և առողջապահության վրա։

Վերջին երեք տարիների ընթացքում Երևանում ավելացել է 3 նոր հիվանդանոց, 8 պոլիկլինիկա, 7 մանկական կոնսուլտացիա, 7 կանացի կոնսուլտացիա, 8 մանկական պոլիկլինիկա, հիվանդանոցներում եղած մահճակալների թիվն ավելացել է 222 մահճակալով։

✪ 1946—1950 թվականներին քաղաքում եղած մասսայական գրադարանների թիվը 36-ից հասել է 58-ի, որոնցում եղած գրքերի քանակը 218 հազարից հասել է ավելի քան 526 հազարի, ակումբների թիվը, 32-ից հասել է 56-ի, կինո-թատրոնների թիվը՝ 7-ից հասել է 9-ի։

✪ Այժմ Երևանում եղած խանութների թիվը 60 տոկոսով ավելի է, քան 1947 թվականին։

—O—



# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ 1950 ԹՎԻ 3-ՐԴ ԵՌԱՄՍՅԱԿՈՒՄ

Հայկական ՍՍՌ Վիճակագրական Վարչության հրապարակած հաղորդագրության տվյալներով մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման պլանը 1950 թվականի երրորդ եռամսյակում կատարված է 103 տոկոսով։

Այդ հանդիսանում է մի նոր վկայություն այն փայլուն հաջողությունների, որ ձեռք են բերել մեր ռեսպուբլիկայի աշխատավորները կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում։

Հայկական ՍՍՌ տերիտորիայում գտնվող ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1950 թվականի երրորդ եռամսյակում, համեմատած 1949 թվականի երրորդ եռամսյակի հետ, աճել է 12 տոկոսով։

1950 թվականի երրորդ եռամսյակում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը, անց-

յալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելի է արտադրել՝ ավտոդողեր 45 տոկոսով, ավտոկամերա 48, պահեստի ավտոմասեր 73, էլեկտրասարքալար 49, պոմպեր 124, պղնձի հանքաքար 16, մետաղահատ դազգահներ 16, սղոցանյութ 60, մանճակալներ 39, ալյումինե ամանեղեն 56, բրդյա գործվածքներ 26, մետաքսյա գործվածքներ 21, կոշկեղեն 49, խոռմի կաշի 72, միս 67, յուղ բուսական 83, լվացքի օճառ 77 տոկոսով ավելի և այլն։

Արտադրության համախառն արտադրանքի պլանը և ապրանքների կարևորագույն տեսակների պլանը նատուրայով կատարել և գերակատարել են՝

«Հայէներգո»-ն, Զանգեզուրի հանքվարչությունը, Ալավերդու Պղնձաձուլական գործարանը, Ալավերդու հանքվարչությունը, Ավտոդողերի գործարանը, Էլեկտրամեքենաշինական գործարանը, Ջերժինսկու անվան Դազգահաշինական գործարանը, Կարբիդի, Ցեմենտի, Մուլիտի գործարանները, Ալրաղաց կոմբինատը, Լենինականի բամբակյա գործվածքների կոմբինատը, Լենինականի Գուլպայի ֆաբրիկան, Մահուդի ֆաբրիկան, Բերիայի Մետաքսագործվածքային և Տրիկոտաժի ֆաբրիկաները, Կաշվի գործարանը, Կոշ-



կեղենի № 3 ֆաբրիկան, Կարի № 1 ֆաբրիկան, Կիրովականի Մեքենաշինական գործարանը և Գործվածքային ֆաբրիկան, «Արարատ» տրեստը, Ծխախոտի ֆաբրիկան, Երևանի Մսի կոմբինատը, լայն սպառման մետաղյա իրերի գործարանը, Էլեկտրական լուսավորության արմատուրայի գործարանը և ուրիշ ձեռնարկություններ։

Արդյունաբերական արտադրանքի անշեղ աճի հետ միասին տեղի է ունեցել նաև նրա աշխատանքի բոլոր հիմնական ցուցանիշների բարելավումը. աշխատանքի արտադրողականությունը 1949 թվականի համեմատությամբ բարձրացել է 11,6 տոկոսով, զգալիորեն բարձրացել է թողարկվող ապրանքների որակն ու ասորտիմենտը։

Արտադրանքի ինքնարժեքը իջեցված է 13,5 տոկոսով, պլանով նախատեսված 10,4 տոկոսի փոխարեն։ Հսկայական աշխատանք է կատարված նոր տեխնիկայի արմատավորման և աշխատանքի ծանր պրոցեսների մեքենայացման գործում։

Փայլուն հաղթանակների է հասել նաև մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղատնտեսությունը։ Զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսության հագեցվածությունը գյուղատնտեսական նորագույն գործիքներով և մե-

քենաներով, բարելավվել է հողագործության կուլտուրան։

Ռեսպուբլիկայի կոլխոզներն ու սովխոզները ժամկետից շուտ՝ 1950 թվականի սեպտեմբերի 10-ին, կատարեցին հացամթերումների պետական պլանը, պետությանը հանձնելով 320 հազար փութ հացահատիկ, 50 հազար ցենտներ խաղող ավելի, քան անցյալ տարի։ Հաջողությամբ կատարվեց նաև բամբակի հումքի հանձնման պետական պլանը։

Ռեսպուբլիկայի ՄՏ կայանները տրակտորային աշխատանքների պլանը կատարել են 23 տոկոսով ավելի, քան անցյալ տարի։ Այս տարի անասնակեր է կուտակված մոտ 50 տոկոսով ավելի, քան անցյալ տարի, որը կայուն բազա է հանդիսանում հանրային անասնապահության զարգացման համար։

—О—

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 22 1950 г.